Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 12 ՀՈՒՆԻՍ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*




# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՓՈԽԱՌՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարությամբ մեր երկիրը հաջողությամբ ընթանում է կոմունիստական շինարարության ուղիով։ Բարձր տեմպով զարգանում են արդյունաբերությունը, տրանսպորտը և գյուղատնտեսությունը, անընդհատ ընդարձակվում է արդյունաբերական և բնակարանային շինարարությունը։ Ժողովրդական տնտեսության վերելքի հիմքի վրա սիստեմատիկաբար ավելանում է մեր սոցիալիստական Հայրենիքի ազգային եկամուտը, բարձրանում են բանվորների, ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսականների դրամական ու նատուրալ եկամուտները։*

*ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի ընդունած դիրեկտիվներում նախատեսվում է արդյու-*

նաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի նոր հզոր վերելք։ Նոր հնգամյակում ՍՍՌՄ ազգային եկամուտը կավելանա առնվազն 60 տոկոսով, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը կաճի առնվազն 35 տոկոսով, կոլտնտեսականների դրամական և նատուրալ եկամուտները՝ առնվազն 40 տոկոսով։

Մեր Հայրենիքի աշխատավորները Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարությամբ, չխնայելով ոչ մի ուժ, պայքարում են հինգերորդ հնգամյա պլանի կատարման համար։

Նոր հնգամյակի երկրորդ տարում արդյունաբերական արտադրանքի տարեկան պլանը կատարվեց 101 տոկոսով։ 1952 թվականին լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին գյուղատնտեսության զարգացման բնագավառում, հացահատիկի համախառն բերքը կազմեց 8 միլիարդ փութ։

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման շնորհիվ մեծ չափերով ավելացավ ազգային եկամուտը։ 1940 թվականից մինչև 1951 թվականը ազգային եկամուտն աճել է 83 տոկոսով, միայն 1952 թվականին, 1951 թվականի համեմատու-



թյամբ, ՍՍՌՄ ազգային եկամտի աճը կազմում է 11 տոկոս։

Ձեռք բերված այդ հաջողությունների շնորհիվ է՛լ ավելի բարելավվեց սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հոգատարության փայլուն արտահայտությունն է արդյունաբերական և պարենային ապրանքների մանրածախ գների սիստեմատիկ իջեցումը։ Պետական մանրածախ գների իջեցման շնորհիվ բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը և սովետական ռուբլու գնողունակությունը։ Միայն 1953 թվականի ապրիլի 1-ին անցկացված գների նոր՝ հետպատերազմյան տարիներին թվով վեցերորդ, իջեցման շնորհիվ մեր երկրի բնակչությունը տարվա ընթացքում կստանա առնվազն 53 միլիարդ ռուբլու լրացուցիչ օգուտ, իսկ մինչ այդ կատարված գների իջեցումից բնակչությունն ստացել է ավելի քան 300 միլիարդ ռուբլու օգուտ։

Աշխատավորների նյութական կյանքի բարելավման մասին պարտիայի և կառավարության հոգատարության փայլուն արտա-

հայտություն է նաև այն, որ յուրաքանչյուր տարի պետական բյուջեից խոշոր հատկացումներ են կատարվում ժողովրդական կրթության, առողջապահության, սոցիալական ապահովության և այլ ծախսերի համար։ Մեր երկրում լուսավորության համար կատարվող ծախսերը 1951 թվականին կազմեցին 57,3 միլիարդ ռուբլի, որը 2,5 անգամ ավելի է 1940 թվականի համեմատությամբ, առողջապահության համար պետական ծախսերը 1940 թվականի 11,2 միլիարդ ռուբլուց ավելացել՝ 1951 թվականին հասել են 26,4 միլիարդ ռուբլու և այլն։ Մինչդեռ կապիտալիստական երկրներում, օրինակ ԱՄՆ-ում, բյուջեի մեծ մասը՝ 74 տոկոսը, Անգլիայում՝ 34 տոկոսը հատկացվում է ռազմական նպատակների համար, որի պատճառով խիստ կերպով վատթարանում են աշխատավորության կյանքի պայմանները։

ՍՍՌՄ պետական բյուջեի ավելի քան 80 տոկոսը ստացվում է սոցիալիստական տնտեսության կուտակումներից։ Պետական բյուջեի լրացուցիչ աղբյուր են հանդիսանում նաև ազգաբնակչության խնայողությունները, որոնք ստացվում են պետական փոխառությունների իրացումից։

Ի տարբերություն բուրժուական երկրների



փոխառությունների, որոնք որպես ծանր բեռ ընկած են աշխատավորների ուսերին, սովետական փոխառությունները ամբողջապես ծառայում են ժողովրդին, օգտագործվում են ժողովրդական տնտեսության զարգացման վերելքի ապահովման և աշխատավորների բարեկեցության հետագա աճման նպատակի համար։

Նախապատերազմյան հնգամյակների տարիներին ՍՍՌՄ աշխատավորները հարազատ պետությանը փոխ էին տվել 50 միլիարդ ռուբլի։ Փոխառությունից ստացված այդ գումարները ներդրվեցին ժողովրդական տնտեսության մեջ և մեծ դեր խաղացին մեր երկիրն առաջավոր ինդուստրիալ և կոլտնտեսային գյուղատնտեսության հզոր տերություն դարձնելու գործում։

Պետական փոխառությունները խոշոր դեր խաղացին Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Սովետական մարդիկ՝ իրենց Հայրենիքի բոցաշունչ հայրենասերները, բաժնեգրվելով ռազմական փոխառություններին, պետությանը փոխ տվեցին ավելի քան 76 միլիարդ ռուբլի, որը նպաստեց Սովետական Բանակի մարտական հզորության բարձրացմանը և թշնամու ջախջախումն արագ կազմակերպելու գործին։

Հետպատերազմյան հնգամյակի տարիներին պետական փոխառություններից ստացվող մուտքը կազմեց մոտ 150 միլիարդ ռուբլի, որը խոշոր ավանդ հանդիսացավ մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման համար։

Մեծ հաջողությամբ իրացվեցին 1951 և 1952 թվականներին բաց թողնված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական փոխառությունները, թեպետ նրանցից յուրաքանչյուրը բաց էր թողնվել 30 միլիարդ ռուբլու չափով, բայց հաջող իրացման շնորհիվ այդ երկու փոխառություններից պետական բյուջեն ստացավ 70 միլիարդ 500 միլիոն ռուբլի։

ՍՍՌՄ պետական փոխառությունների մշտական հաջողությունը վառ կերպով վկայում է բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի բարձր հայրենասիրությունը, նրանց անձնուրաց նվիրվածությունը և համախմբվածությունը Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության շուրջը։

Սովետական պետական փոխառությունները վայելում են համաժողովրդական ճանաչում և վստահություն։ Դրանք իսկական ժողովրդական փոխառություններ են։ Մեզ մոտ ավելի քան 70 միլիոն քաղաքացիներ



ունեն փոխառության պարտատոմսեր։ Ամեն մի աշխատավոր լավ գիտե, որ իր միջոցները փոխ տալով պետությանը, դրանով իսկ՝ ակտիվորեն մասնակցում է ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանը, բնակչության նյութական և կուլտուրական մակարդակի է՛լ ավելի բարձրացմանը։ Սովետական կառավարության կողմից բաց թողնված ամեն մի փոխառության բաժանեգրություն վերածվում է սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության հզոր ցույցի։

Սովետական փոխառությունը պետական շահերի և քաղաքացիների անձնական շահերի զուգակցման ուշագրավ օրինակ է։ Այն ո՛չ միայն նպաստում է երկրի ժողովրդական տնտեսության վերելքին, ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը, այլև դրա հետ միասին բնակչությանը բերում է մեծ եկամուտներ, որոնք ստացվում են շահումների ձևով։ Սովետական պետական փոխառությունների գծով բնակչությանը վճարված շահումների ընդհանուր գումարը մինչև հիմա կազմում է ավելի քան 37 միլիարդ ռուբլի, որից 17 միլիարդ ռուբլին վճարվել է հետպատերազմյան տարիներին, իսկ 1951 և 1952 թվա-

կանների ընթացքում շահումների դիմաց վճարված գումարը կազմում է 12 միլիարդ ռուբլի։ 1953 թվականին տեղի կունենա պետական փոխառությունների 20 խաղարկություն։

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին Հայաստանի աշխատավորությունը ևս մեծ ակտիվություն է ցուցաբերել փոխառությունների բաժնեգրության գործում և ոգևորությամբ ձեռք է բերել պետական փոխառության պարտատոմսեր։ Մինչև Հայրենական Մեծ պատերազմը Հայաստանում փոխառության բաժնեգրության գումարը կազմում էր 200 միլիոն ռուբլի։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին ռեսպուբլիկայի աշխատավորությունը պետությանը փոխ տվեց 790 միլիոն ռուբլի։ Հետպատերազմյան հնգամյակների տարիներին մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը փոխառություններին բաժնեգրվել և մուծել է 833 միլիոն ռուբլի, իսկ 1951 և 1952 թվականներին՝ 449 միլիոն ռուբլի։ Այսպիսով Հայաստանի աշխատավորները իրենց խնայած միջոցներից հարազատ պետությանը փոխ են տվել ավելի քան 2 միլիարդ 272 միլիոն ռուբլի։



Միաժամանակ ռեսպուբլիկայի աշխատավորությունը փոխառության պարտատոմսերից՝ շահումների միջոցով ստացել է խոշոր եկամուտ։ Մինչև 1953 թվականի հունվարի 1-ը ռեսպուբլիկայի խնայդրամարկղները շահումների ձևով աշխատավորությանը վճարել են ավելի քան 249 միլիոն ռուբլի գումար, որի մեջ չեն մտնում հազար ռուբլուց բարձր շահումները, որոնց վճարումները կատարվում է ՍՍՌՄ խնայդրամարկղների Գլխավոր Վարչության կողմից։ 1953 թվականի հինգ ամիսների ընթացքում ռեսպուբլիկայի աշխատավորությանը վճարված շահումների գումարը կազմում է ավելի քան 27 միլիոն ռուբլի։

Սովետական փոխառությունները իսկական ժողովրդական փոխառություններ են և նրանցից ստացված ամբողջ եկամուտը ծառայում է ժողովրդի շահերին։

Հ. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ Պետաշխխնայդրամարկղների և Պետվարկի վարչության պետի տեղակալ

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆ Է

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի կողմից ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ընդունված դիրեկտիվներում նախատեսված վիթխարի խնդիրները ժամանակին կենսագործելու համար հսկայական նշանակություն ունի սոցիալիստական մրցության հետագա ծավալումը։

Աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության հիման վրա ծնունդ առած սոցիալիստական մրցությունը առաջին հնգամյակի տարիներին դարձավ մի մասսայական շարժում, որը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ գնալով ավելի ծավալվեց, ընդգրկելով մեր անծայրածիր երկրի բոլոր շրջանները, միլիոնավոր բանվորների և գյուղացիների։

Սովետական Միության Կոմունիստական



պարտիան միշտ էլ մեծ ուշադրություն է նվիրել սոցիալիստական մրցության կազմակերպմանը և սոցիալիստական մրցության մեջ գլխավորը համարել է՝ առաջ քաշել ետ մնացողներին, աշխատանքում հավասարվել առաջավորներին և ձեռք բերել ընդհանուր վերելք։

Սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու շնորհիվ կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում մենք ունենք աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության բազմաթիվ օրինակներ, որոնց նպատակն է ապահովել սոցիալիստական արտադրության անընդհատ աճն ու կատարելագործումը։

Մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը և ազնիվ աշխատանքը բարձր է գնահատվում Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության կողմից։ Ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերված նվաճումների ու հաջողությունների համար աշխատավորները խրախուսվում են նյութապես և արժանանում են Սովետական պետության մրցանակներին և պարգևներին։ Միայն Հայրենական պատերազմի ավարտումից հետո՝ մինչև 1952 թվականի

հոկտեմբերը ՍՍՌՄ շքանշաններով և մեդալներով պարգևատրվել են մեկ միլիոն 346 հազար բանվորներ, կոլտնտեսականներ, գիտնականներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ծառայողներ, բժիշկներ, ուսուցիչներ և այլ աշխատողներ։

Մեր երկրի 6.480 աշխատողների աչքի ընկնող նորարարական գործունեությունը նշվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման շնորհումով։

ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ 19-րդ համագումարի դիրեկտիվները սահմանում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք և ապահովում են ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա զգալի աճ։ Խորապես գիտակցելով հինգերորդ հնգամյակի խնդիրների վեհությունը, բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան համակված են միասնական ստեղծագործական ձգտումով՝ կատարել ու գերակատարել իրենց առջև դրված խնդիրները։

Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, կատարելագործելով արտադրության տեխնոլոգիան և աշխատանքի



մեթոդները, արտադրության մեջ արմատավորելով աշխատանքի դրական օրինակները և առաջավորների ու նորարարների պրոգրեսիվ նախաձեռնությունները, ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները մեծ նվաճումների են հասել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրության ռեզերվները հայտնաբերելու և լայնորեն օգտագործելու, խնայողության ռեժիմը ճշտորեն կիրառելու, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը իջեցնելու և բարձր որակի արտադրանք տալու ուղղությամբ։

Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը 1952 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, 55 տոկոսով ավելի արտադրանք է տվել, միաժամանակ իջեցնելով արտադրանքի ինքնարժեքը և բարձրացնելով որակը։ Գործարանի կոլեկտիվը այս տարվա հինգ ամսվա արտադրական պլանը կատարել է 104,1 տոկոսով, իսկ մայիս ամսվա արտադրական պլանը՝ 109,7 տոկոսով։ Գործարանում արտադրանքի թողարկումը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է 13,2 տոկոսով։ Այս տարվա առաջին եռամսյակում գործարանի կոլեկտիվը կատարել է 17

հազար 700 կիլովատ էլեկտրաէներգիայի խնայողություն։ Այդ նույն ժամանակաշրջանում գործարանի յուրաքանչյուր բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 1,9 տոկոսով։

Ներկայումս սոցիալիստական մրցության կարևորագույն տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ աշխատավորներն արդեն չեն բավարարվում աշխատանքի միայն քանակական ցուցանիշներով, այլ միաժամանակ աշխատում են արտադրության յուրաքանչյուր տեղամասում հասնել որակական բարձր ցուցանիշների։

Այդ նպատակին, ձեռնարկության որակական ցուցանիշների, ինչպես նաև աշխատանքի արտադրողականության և եկամտաբերության բարձրացմանն է ուղղված սոցիալիստական մրցությունն ռեսպուբլիկայի առաջավոր գործարաններում և ֆաբրիկաներում։

Երևանի Ավտոդողերի գործարանի կոլեկտիվը այս տարվա հինգ ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացրել է 29 տոկոսով։ Միայն ընթացիկ տարվա առաջին եռամսյակում խնայված է 26 հազար կիլովատ էլեկտրաէներգիա։



Նույն ժամանակում մեկ բանվորի աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 3 տոկոսով։ Գործարանը հինգ ամսվա արտադրական պլանը կատարել է 103,3 տոկոսով։

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում նաև ռեսպուբլիկայի բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ։ Լենինականի Հեծանիվի գործարանի կոլեկտիվը 1952 թվականի պլանը կատարեց ժամկետից շուտ, երկրին տալով մի քանի հարյուր հազար ռուբլու արտապլանային արտադրանք, իսկ 1953 թվականի անցած հինգ ամիսների ընթացքում պլանից դուրս տվել է զգալի քանակությամբ արտադրանք։ Գործարանի մեխանիկական ցեխի նորարարների առաջարկությունների կենսագործման շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 40—50 տոկոսով, միաժամանակ վերացվել է խոտանը։

Լենինականի հայրենասեր տեքստիլագործները, սոցիալիստական մրցության մեջ մտնելով, պարտավորվեցին ժամկետից շուտ կատարել 1953 թվականի պետական առաջադրանքը և տալ մեկ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Կենսագործե-

րով մրցումով ստանձնած պարտավորությունները, Մանարան ֆաբրիկայի կոլեկտիվը գերակատարեց 1953 թվականի անցած հինգ ամիսների առաջադրանքը և առաջին տեսակի արտադրանքը պլանով նախատեսված 96 տոկոսի փոխարեն հասցրեց 96,7 տոկոսի:

Սոցիալիստական մրցության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման համար մղվող պայքարը եղել է և մնում է մրցողների գլխավոր նպատակը: Վերջերս Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը մտնելով սոցիալիստական մրցության մեջ, պարտավորվեց 1953 թվականի պլանը կատարել ժամկետից շուտ, տալով միմիայն առաջին տեսակի արտադրանք, գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունները արմատավորելու միջոցով տալ 7,5 միլիոն ռուբլու խնայողություն և սիստեմատիկաբար բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը:

Հետևելով կիրովցիների հայրենասիրական նախաձեռնությանը, ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունները պայքարում են օրավուր բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, որովհետև



«Աշխատանքի արտադրողականությունը,— ասում էր Վ. Ի. Լենինը,— վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար»:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար եռանդուն պայքար է մղում նաև Երևանի Մահուդի ֆաբրիկայի կոլեկտիվը: 1953 թվականի հինգ ամսում այստեղ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 31 տոկոսով, գերակատարված է ինքնարժեքի իջեցման պլանը: Ֆաբրիկայում անցած հինգ ամիսների արտադրական պլանը կատարված է 155,4 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ տալով 78 տոկոսով ավելի արտադրանք:

Ներկա ժամանակաշրջանում, երբ մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անցում է կատարում սոցիալիզմից դեպի կոմունիզմ, առանձնակի նշանակություն է ստանում սոցիալիստական մրցության հետագա ծավալման նպատակով մասսաների մեջ տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի է՛լ ավելի ուժեղացումը: Ագիտատորները, պարտիական կազմակերպությունների

ղեկավարությամբ, պետք է աշխատավորների մեծ խանդավառությունը և նրանց ստեղծագործական նախաձեռնությունը ուղղեն նոր հնգամյակի վիթխարի խնդիրները կատարելու և գերակատարելու նպատակին։

Մրցությունը կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում առաջ է քաշում արտադրության առաջավորներ և աշխատանքի դրական օրինակներ։ Պարտիական, պրոֆմիութենական կազմակերպությունների, բոլոր ագիտատորների խնդիրն է՝ առաջինը տեսնել, հայտնաբերել առաջավորների և նորարարների նախաձեռնությունը, աշխատավոր մասսայի մեջ ամենկերպ տարածել առաջավոր փորձը, հետևել նոր մեթոդների արմատավորմանը և դրանով իսկ օգնել ետ մնացողներին՝ բարձրանալու առաջավորների մակարդակին և ամբողջ կոլեկտիվով նվիրված աշխատանք կատարել նոր հնգամյակի վիթխարի խնդիրները ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու և գերակատարելու համար։

Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

### (Թվեր և փաստեր)

✪ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդադրում հոգ են տանում աշխատավորների կյանքի ու առողջության մասին, որպեսզի անընդհատ բարելավվի նրանց ցույց տրվող բժշկական օգնությունը, որ սովետական մարդիկ լինեն առողջ, ուժեղ և երկարակյաց։

Հինգերորդ հնգամյակում նախատեսվում է հիվանդանոցների, դիսպանսերների, ծննդատների, սանատորիաների, հանգստյան տների, մանկամսուրների, մանկապարտեզների հետագա ընդարձակում։

Նոր հնգամյակում մահճակալների թիվը հիվանդանոցներում կավելանա առնվազն 20 տոկոսով, սանատորիաներում տեղերի թիվը՝ մոտավորապես 15 տոկոսով, հանգստյան տներում՝ 30 տոկոսով, մանկամսուրներում՝ 20 տոկոսով և մանկապարտեզներում՝

40 տոկոսով։ Առնվազն 2,5 անգամ պետք է ավելացվի դեղորայքի, բժշկական սարքավորման ու գործիքների արտադրությունը, միաժամանակ էլ ավելի արագորեն ընդլայնվելու է նորագույն դեղորայքի և բուժ-պրոֆիլակտիկայի այլ միջոցների, ինչպես նաև ժամանակակից դիագնոստիկ և բժշկական սարքավորման արտադրությունը։

✪ Ժողովրդական առողջապահության բնագավառում մեծ աշխատանք է կատարված հետպատերազմյան տարիներին։ Դեռևս 1948 թվականին մեր երկրի բժշկական հիմնարկների թիվը 40 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ 1951—1952 թվականների ընթացքում հիվանդանոցներում և ծննդատներում մահճակալների թիվն ավելացավ 100 հազարով։ Ցարական Ռուսաստանում 1913 թվականին կար ընդամենը 148,3 հազար հիվանդանոցային մահճակալ։

✪ Մեր երկրում մեծ աշխատանք է կատարվում բժշկական կադրերի պատրաստման ուղղությամբ։ 1940 թվականին ՍՍՌՄ-ում աշխատում էին ավելի քան 150 հազար բժիշկներ, իսկ 1952 թվականին նրանց թիվը կրկնապատկվեց, հասավ մոտ 300 հազարի։ Միջին բժշկական պերսոնալի



թիվը՝ ֆելդշերներ, բուժքույրեր և այդ կարգի ուրիշ աշխատողներ, հասնում է 900 հազար մարդու։ Նոր հնգամյակում բժիշկների թիվն ավելանալու է ոչ պակաս քան 25 տոկոսով։ Լայն միջոցառումներ են ձեռնարկվելու բժիշկների որակավորման գործում։

✪ Բնակչության նկատմամբ բժշկական օգնության բարելավումն առանձնապես աչքի է ընկնում ազգային ռեսպուբլիկաներում, անցյալում երկրի հետամնաց շրջաններում։ Այսպես, օրինակ, Կիրգիզիայում մինչև ռևոլյուցիան կար ընդամենը 6 հիվանդանոց, 9 ամբուլատորիա և 5 դեղատուն, իսկ այժմ Կիրգիզական ռեսպուբլիկան ունի 212 հիվանդանոց, 390 ֆելդշերական և մանկաբարձական կետեր, 260 բժշկական այլ հիմնարկներ, 580 դեղատներ և կիոսկներ։ Այստեղ բժշկական պերսոնալն ավելացել է ավելի քան 100 անգամ։ Յակուտիայում մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան կար ընդամենը 9 հիվանդանոց, որտեղ աշխատում էին 11 բժիշկ և 37 ֆելդշեր։ Այժմ Յակուտիայում կան 630 բժշկական հիմնարկներ իրենց լրիվ հաստիքներով, ուր աշխատում են 3 հազար մարդ։

✪ Մինչև Սովետական իշխանության հաստատումը Ուզբեկստանում 31 հազար

բնակչին ընկնում էր մեկ բժիշկ։ Մոտավորապես նույնքան բնակչին ներկայումս մեկ բժիշկ է ընկնում Պակիստանում։ Ուզբեկական ՍՍՌ-ում ներկայումս 895 բնակչին ընկնում է մեկ բժիշկ։ Ուզբեկական ՍՍՌ-ն բժիշկներով անհամեմատ ավելի լավ է ապահովված, քան, օրինակ, Արևմտյան Եվրոպայի այնպիսի երկրներ, ինչպիսին Ֆրանսիան է, որտեղ հազար մարդուն ընկնում է մեկ բժիշկ, կամ Հոլանդիան, որտեղ 1260 բնակչին ընկնում է մեկ բժիշկ։

✪ Ադրբեջանական ՍՍՌ-ում 490 մարդուն ընկնում է մեկ բժիշկ։ Սովետական Ադրբեջանի բնակչությունը բուժօգնությամբ ապահովված է ութ և կես անգամ ավելի լավ, քան Թյուրքիայի բնակչությունը և 23 անգամ ավելի լավ, քան Իրանի բնակչությունը։ Վրացական ՍՍՌ-ում 373 մարդուն ընկնում է մեկ բժիշկ, Հայկական ՍՍՌ-ում 483 մարդուն՝ մեկ բժիշկ։ Այդ ռեսպուբլիկաների բնակչությունը բուժօգնությամբ ապահովված է զգալիորեն ավելի մեծ չափով, քան աշխարհի որևէ երկրի բնակչությունը։

ԱՄՆ-ում բժշկական օգնությունից կարող է օգտվել միայն բնակչության աննշան մասը, որովհետև բժշկին պետք է վճարել։ Անգլիայում պետական հիվանդանոցները և



ամբուլատորիաները ծառայում են սահմանափակ թվով բնակիչների։ Ֆրանսիայում բժշկական օգնությունն անմատչելի է աշխատավորության համար։

Ինքնին հասկանալի է, որ գաղութային և կիսագաղութային երկրներում դրությունն ավելի վատ է և գրեթե բացակայում է բժշկական օգնությունը բնակչության նկատմամբ։

✪ Կապիտալիստական երկրներում առողջապահությունը առևտրական գործ է, նա ամբողջությամբ գտնվում է մոնոպոլիաների ձեռքում և ունի շահադիտական նպատակ։

Մեր երկրում առողջապահությունը գտնվում է պետության ձեռքում և նրա հիմնական սկզբունքն անվճար բուժումն է, նա լիովին ծառայում է ժողովրդին։

✪ ՍՍՌՄ-ում անընդհատ բարելավվում են աշխատավորության հանգստի պայմանները։ 1952 թվականին մեր երկրում գործում էր 2500 հանգստյան տուն և սանատորիա, որ անվճար կամ արտոնյալ պայմաններով հանգստանում և բուժվում էին մի քանի միլիոն բանվորներ, ծառայողներ և կոլտնտեսականներ։ Նոր հնգամյակում հանգստյան տներում հանգստացողների թիվն ավե-

լանալու է 30 տոկոսով, իսկ սանատորիաներում՝ 15 տոկոսով։

✪ 1953 թվականին սոցիալական ապահովության միջոցների հաշվին ավելի քան 3 միլիոն աշխատավորներ կստանան կուրորտային ուղեգրեր։ Մոտ 3,5 միլիոն մարդ իր հանգիստը կանցկացնի տուրիստական արշավանքներում, երկրի գեղատեսիլ և տեսարժան վայրերում։

✪ Այս ամռանը մեր երկրի ավելի քան 5 ու կես միլիոն դպրոցականներ իրենց ամառային արձակուրդները կանցկացնեն պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում, ամառանոցներում և տուրիստական արշավանքներում։ Հետպատերազմյան տարիներին պիոներական ճամբարների պահպանման համար կատարված է ավելի քան 5 միլիարդ ռուբլի ծախս։

✪ Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի հարյուր հազարավոր աշխատավորներ այս տարի կհանգստանան և կբուժվեն հանգստյան տներում ու սանատորիաներում։ Մոսկվայի ածխային ավազանի երկու հազար հանքափորներ կլինեն Սոչիի, Կիսլովոդսկի, Ռիգայի ծովափնյա և Ղրիմի սանատորիաներում։ Մոտ վեց հազար



հանքափորներ իրենց արձակուրդը կանցկացնեն հանգստյան տներում։

✪ Լ. Մ. Կագանովիչի անվան առաջին առանցքակալների գործարանի ավելի քան 3 հազար բանվոր, ինժեներ, տեխնիկ, ծառայող ստանալու են սանատորիաների և հանգստյան տների ուղեգրեր։ Կրասնոխոլմի բրդյա գործվածքեղենի գործարանի մոտ 400 աշխատողներ կհանգստանան սանատորիաներում և հանգստյան տներում։ Մոսկվայի շինարար բանվորներից 14 հազար հոգի այս տարի կգնան կուրորտներում հանգստանալու։

✪ Բազմաթիվ մոսկվացիներ իրենց հանգստյան օրերը անց են կացնում մեկօրյա հանգստյան տներում։ Մեկօրյա հանգստյան տունը, որը գտնվում է Մաքսիմ Գորկու անվան Կուլտուրայի և հանգստի կենտրոնական պարկում, ունի ընթերցանության ընդարձակ դահլիճ, ճաշարան, ակումբ, ֆիզկուլտ դահլիճ և հանգստյան գեղեցիկ ու հարմար սենյակներ։

✪ Ժողովրդի առողջության պահպանման գործում վիթխարի աշխատանք է կատարված նաև Հայկական ՍՍՌ-ում։ 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, հիվան-

դանոցային մահճակալների թիվը ավելացել է 10 տոկոսով, իսկ գյուղերում 16,5 տոկոսով։ Անընդհատ ավելանում է բժիշկների թիվը։

✪ Ժողովրդի առողջությունը պահպանելու համար միայն այս տարի մեր ռեսպուբլիկայում կատարվելու է 172 միլիոն 500 հազար ռուբլու ծախս։ Մինչև հինգերորդ հնգամյակի վերջը ռեսպուբլիկայում սանատորիաներ կառուցելու համար ներդրվելու է ավելի քան 11 միլիոն ռուբլի։

✪ Այս տարի միայն մեր ռեսպուբլիկայի պրոֆմիութենական կազմակերպությունների գծով 12 հազար բանվորներ և ծառայողներ իրենց հերթական արձակուրդն անց են կացնելու սանատորիաներում և հանգստյան տներում։ Նրանցից շատերը հանգստանալու են Ղրիմում և Սև ծովի ափերին գտնվող միութենական սանատորիաներում։ Միաժամանակ պիոներ-դպրոցականներից 16 հազար հոգի, իրենց ամառային արձակուրդի ժամանակ, հանգստանալու են պիոներական ճամբարներում և մանկական սանատորիաներում։

✪ 1953 թվականին Երևանի Կիրովի անվան գործարանի 450 բանվորներ, ծառա-



յողներ և տեխնիկներ կստանան սանատորիաների և հանգստյան տների ուղեգրեր։ Նրանցից շատերն արդեն գտնվում են սանատորիաներում և հանգստյան տներում։

Գործարանը իր միջոցներով 375 պիոներ-դպրոցականների ուղարկելու է պիոներական ճամբարներում հանգստանալու։

✪ Հայկական ՍՍՌ Սոցիալական ապահովության մինիստրությունը այս տարի Հայրենական պատերազմի հաշմանդամներից և մյուս թոշակառուներից 1600 հոգու ուղարկելու է սանատորիական բուժման, նրանցից 400 հոգի կստանան Միութենական սանատորիաների ուղեգրեր։ Հայրենական պատերազմի հաշմանդամներից և մյուս թոշակառուներից շատերն արդեն գտնվում են սանատորիաներում։

✪ Հայկական ՍՍՌ-ի տարրական և միջնակարգ դպրոցների աշխատողների պրոֆմիության միջոցներով 500 ուսուցիչներ ուղարկվելու են սանատորիական բուժման, 700 հոգի՝ հանգստյան տուն։ 300 ուսուցիչներ իրենց հանգիստը կանցկացնեն տուրիստական բազաներում։ Ամռան շրջանում դեպի մեր Հայրենիքի գեղատեսիլ և տեսարժան վայրերը կազմակերպվող էքսկուրսիաներին կմասնակցեն 2000 ուսուցիչ։

✪ Տնտեսության սոցիալիստական սիստեմը, սովետական սոցիալիստական կարգը ստեղծել է լայն հնարավորություններ աշխատավորների առողջությունն ամրապնդելու համար։ Մեր երկրում աշխատավորների նյութական բարեկեցության աճման և ժողովրդական առողջապահության գործի բարելավման շնորհիվ խիստ պակասել է մարդկանց մահացությունը, ավելացել է ծննդաբերությունը, բնակչության աճը յուրաքանչյուր տարի կազմում է 3 միլիոն մարդ։

✪ ՍՍՌՄ-ում ավելացել է մարդկանց երկարակեցությունը։ Այժմ հարյուր հազարների է հասնում 75 և ավելի տարիք ունեցող մարդկանց թիվը։ Մոտ 100 հազար մարդ ունի 90 տարեկանից բարձր տարիք, իսկ 100 և հարյուրից բարձր տարիք ունեցող մարդկանց թիվը հասնում է մոտ 30 հազարի։

---

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

---

## ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՎԵՐԵԼՔԸ ՄԵՐՁԱՎՈՐ ԵՎ ՄԻՋԻՆ ԱՐԵՎԵԼՔԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ Սովետական Միության տարած համաշխարհային պատմական հաղթանակը հզոր խթան հանդիսացավ ժողովուրդների պայքարի գործում՝ հանուն ազատության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։ Հետպատերազմյան շրջանում գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը չտեսնված թափ ստացավ։

Ժողովուրդների ազգային-ազատագրական հուժկու շարժումը հանդիսանում է ժամանակակից միջազգային իրադրության բնորոշ հատկանիշներից մեկը։ «Գաղութային և կախյալ երկրների ժողովուրդները,— ասաց ընկեր Գ. Մ. Մալենկովը ՍՄԿԿ 19-րդ համագումարում տված հաշվետու զեկուցման մեջ,— ավելի ու ավելի վճռական դիմա-

դրությամբ են ցույց տալիս իմպերիալիստական հարստահարիչներին։ Ազգային-ազատագրական շարժման հարաճուն թափի մասին վկայում է Վյետնամի, Բիրմայի, Մալայայի, Ֆիլիպինների, Ինդոնեզիայի ժողովուրդների պայքարը, ազգային դիմադրության աճը Հնդկաստանում, Իրանում, Եգիպտոսում և ուրիշ երկրներում»։

Ավելի և ավելի է բարձրանում ազգային-ազատագրական շարժման ալիքը Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում։ Այդ երկրների տերիտորիան, միասին վերցրած, կազմում է մոտավորապես 10 միլիոն քառ. կիլոմետր տարածություն, ուր ապրում են ավելի քան 90 միլիոն բնակիչ, որն ունի խոշոր տնտեսական և ռազմա-ստրատեգիական նշանակություն։

Մերձավոր և Միջին Արևելքի համարյա բոլոր երկրները արդեն վաղուց են օկուպացիայի ենթարկված օտարերկրյա պետությունների կողմից և դարձել են գաղութներ ու կախյալ երկրներ։ Հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ուժեղացավ ամերիկյան մոնոպոլիստների ներթափանցումը այդ երկրների էկոնոմիկայի մեջ։

Զավթելով Մերձավոր և Միջին Արևելքի



երկրների էկոնոմիկան, ամերիկա-անգլիական իմպերիալիստները փորձում են այդ ժողովուրդներին դարձնել իրենց ստրուկ և օգտագործել իրենց ռազմական ավանտյուրաների համար։

Առանձին ժողովուրդներին և ազգերին իրար դեմ հրահրելով, պրովոկացիայի և տեռորի միջոցով անցյալում իմպերիալիստներին հաջողվում էր վիժեցնել Մերձավոր և Միջին Արևելքի երկրների աշխատավոր մասսաների ձգտումը դեպի ազգային անկախություն։ Բայց հետպատերազմյան ժամանակաշրջանում քայքայիչ գործունեության այդ հին միջոցները այլևս անբավարար են։ Ազգային-ազատագրական շարժման վերելքը Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում ավելի սրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում չափազանց սրված անգլո-ամերիկյան հակասությունները խստորեն ի հայտ են գալիս Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում (Իրան, Իրաք, Անդրհորդանան, Եգիպտոս, Սիրիա, Թյուրքիա և այլն), մասնավորապես այդ երկրներում ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի իմպերիալիստական հետախուզությունների քայքայիչ գործունեության մեջ։ Այդ

քայքայիչ գործունեությունը տարվել և տարվում է կառավարական հեղաշրջումներ կազմակերպելու, անցանկալի քաղաքական գործիչների սպանության, խռովությունների, խլրտումներ կազմակերպելու և այլ ձևերով։ Այսպես, վերջին ժամանակներս Սիրիայում կատարվել է կառավարական 4 հեղաշրջում։ Հենց վերջերս, այս թ. հունիսի 1-ին, Սիրիայում մերկացվեց կառավարական հեղաշրջման նոր փորձ, որի կազմակերպիչները, ինչպես հաղորդում է Լիբանանի և Սիրիայի մամուլը, սերտորեն կապված էին «օտարերկրյա տերություններից մեկի հետ»։ Մի շարք երկրներում տեղի են ունեցել բազմաթիվ տեռորիստական ակտեր, որոնց հետևանքով սպանվել են Իրանի պրեմյեր-մինիստր Ռազմարան, Անդրհորդանանի թագավոր Աբդուլլան, Լիբանանի նախկին պրեմյեր-մինիստր Ռիադ Սոլխը և ուրիշներ։

Առանձնապես լարված պայքար է ծավալվում իմպերիալիստների միջև նավթահանքերի և ուրիշ ռազմա-ստրատեգիական հումքի համար։ Դեռևս այդ պայքարում հաղթող են ամերիկյան իմպերիալիստները։ Այսպես, խոշորագույն ամերիկյան նավթատեր Ռոկֆելլերը, որը վերջերս հատուկ այցելություն կատարեց Մերձավոր և Միջին Արևելքի երկրները, գավթել և գիշատիչ կերպով շահագործում է Սաուդյան Արաբիայի և



Բահրեյնյան կղզիների հարուստ նավթահանքերը։ Ամերիկյան մոնոպոլիստները ձգտում են Անգլիային դուրս մղել Իրանից, Եմենից, Սիրիայից և Եգիպտոսից։

Զավթելով Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների գլխավոր հարստությունը՝ նավթը, անգլիական և ամերիկյան նավթային կոմպանիաները ստանում են հսկայական շահույթներ։ Դաժանաբար շահագործելով իրանական և արաբական նավթագործ բանվորներին, մոնոպոլիստները արդյունահանում են նավթ, որը չորս անգամ ավելի էժան է նստում, քան նրա արդյունահանումը ԱՄՆ-ում։ Այդ երկրների նավթագործ բանվորները իրենց տաժանակիր աշխատանքի համար (օրական աշխատում են 12—16 ժամ) ստանում են չնչին աշխատավարձ և ապրում են անտանելի պայմաններում։

Եգիպտական «Ալ-ախրամ» թերթը գրում էր, որ Եգիպտոսի 20 միլիոն բնակչության գերակշռող մեծամասնությունը «այժմ ապրում է նույնպիսի պայմաններում, ինչպիսի պայմաններում ապրում էին նրանց նախահայրերը երեք հազար տարի առաջ»։ Բնակչության 65 տոկոսը անգրագետ է, 90 տո-

կոսը՝ տրախոմայով հիվանդ։ Մահացությունը երկրում՝ համարվում է աշխարհում ամենաբարձրներից մեկը։ Կյանքի միջին տևողությունը չի գերազանցում 31 տարուց։

Ժողովրդական լայն մասսաների ապրուստի պայմանները Իրանում Եգիպտոսից լավ չեն։ Երկրի բնակչության 80 տոկոսից ավելին անգրագետ է։ Ինչպես ստիպված էր խոստովանել 1951 թ. Իրանի պրեմյեր-մինիստր Մոսադդիկը, «իրանական ժողովուրդը չունի նույնիսկ առաջին անհրաժեշտության առարկաներ, և իրանցիների կյանքի մակարդակը, հավանական է, ամենացածրն է աշխարհում»։

Անտանելի պայմաններում են գտնվում և գյուղացիական մասսաները, որոնք կազմում են այս երկրների բնակչության գերակշռող մեծամասնությունը։ Թյուրքիայում 17 միլիոն գյուղացիներից 12 միլիոնը հողազուրկ են, կամ սակավահող, իսկ 2 միլիոնը հավաքած բերքի մինչև $^3/_4$ մասը տալիս են հողատերերին։ Եգիպտոսում և Իրանում գյուղացիների մոտ 90 տոկոսը հողազուրկ են կամ սակավահող։ Նույնպիսի դրություն է տիրում նաև Իրաքում, Անդրհորդանանում, Սիրիայում և ուրիշ երկրներում։

Մերձավոր Արևելքի ժողովրդական մաս-



սաները ավելի ու ավելի են գիտակցում, որ աշխատավորության թշվառ դրության գլխավոր հանցավորները օտարերկրյա իմպերիալիստները և նրանց տեղական լակեյներն են, որոնք դավաճանում և ամերիկյան դոլարներով վաճառում են իրենց երկրների շահերը։ Աշխատավորներն ավելի ակտիվորեն են պայքարում և պահանջում առաջին հերթին վռնդել երկրից օտարերկրյա նավթային և այլ գիշատիչ մոնոպոլիստներին և նավթարդյունաբերությունն ազգայնացնել։

Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում ազգային-ազատագրական շարժման վերելքի կարևորագույն պայմանն է բանվոր դասակարգի աճը և նրա ռևոլյուցիոն գիտակցության բարձրացումը։ Թյուրքիայում 1951 թվականին կար համարյա 1 միլիոն արդյունաբերական և տրանսպորտային բանվոր, Եգիպտոսում՝ 1 միլիոնից ավելի, Իրանում՝ 600 հազար, Սիրիայում և Լիբանանում՝ 200 հազար, Իրաքում՝ 50 հազար, Իսրայելում՝ 80 հազար։ Բանվոր դասակարգը համախմբում է բոլոր աշխատավորներին պայքարելու ընդդեմ իմպերիալիզմի, հանուն ազատության և դեմոկրատիայի։

Մերձավոր և Միջին Արևելքի երկրների ժողովրդական մասսաների պայքարը հա-

նում իրենց քաղաքական և տնտեսական իրավունքների, ազգային անկախության, ինչպես նաև գյուղացիների պայքարը ընդդեմ տեղական ֆեոդալների և նրանց օտարերկրյա խնամակալների՝ միաձուլվում են այդ ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ընդհանուր հորձանքի մեջ, որն ուղղված է ինչպես ֆեոդալական մնացորդների, այնպես էլ իմպերիալիզմի ճնշման դեմ։

Հետպատերազմյան շրջանի հակաիմպերիալիստական շարժման վերելքի ազդեցության տակ Իրանի ժողովուրդը վճռեց վերջ դնել բրիտանական իմպերիալիստների գաղութային սարկության։

1950 թվականի դեկտեմբերից մինչև 1951 թվականի նոյեմբերը Իրանում տեղի ունեցան ավելի քան 60 խոշոր ցույց և միտինգ, որոնց մասնակիցները պահանջեցին ազգայնացնել նավթարդյունաբերությունը և այն հանձնել Իրանի կառավարությանը։ Ազգային-ազատագրական շարժման հզոր ճնշման տակ իրանական մեջլիսը 1951 թվականի ապրիլին ընդունեց նավթարդյունաբերության ազգայնացման և երկրում անգլո-իրանական նավթային ընկերության գործունեության դադարեցման մասին օրենքը։ Անգլիական



չինովնիկները վտարվեցին Իրանից, իսկ անգլիական հյուպատոսարանները փակվեցին։ 1952 թվականի հուլիսի 31-ին աշխատավոր մասսաների ճնշման տակ փակվեց այսպես կոչված «Բրիտանական բանկը Իրանում և Միջին Արևելքում» (նախկին Շահնշահի բանկը)։

Իրանի նավթարդյունաբերության ազգայնացման մասին լուրը ջերմ խանդավառությամբ ընդունվեց գաղութային Արևելքի բոլոր ժողովուրդների կողմից։ Սիրիայում և Լիբանանում, Իրաքում և Անդրհորդանանում, Եգիպտոսում և Սուդանում, ամենուրեք ժողովրդական մասսաները համախմբվում են՝ պայքարելու հանուն իրենց շահերի։

Իրանի ժողովրդի պայքարի հետ համերաշխության շարժումը՝ Իրաքում միաձուլվեց Իրաքի աշխատավորների պայքարի հետ՝ հանուն ազգային անկախության, ընդդեմ անգլիական իմպերիալիստների։ Իրաքի ժողովուրդը միահամուռ կերպով պահանջեց վերացնել 1930 թվականին ստորագրված անգլո-իրաքական պայմանագիրը, որի վրա հենվելով անգլիացիները շարունակում են օկուպացիայի ենթարկել երկիրը և գիշատիչ կերպով կողոպտել նրա բնական հարստու-

թյունները։ Ազգային-ազատագրական շարժումը Իրաքում լուրջ թափ ստացավ, մանավանդ 1952 թվականի նոյեմբերից հետո, երբ երկրի մայրաքաղաք Բաղդադում կայացան հակաիմպերիալիստական հզոր ցույցեր, որոնց մասնակիցները բացականչում էին. «կորչեն անգլո-ամերիկյան իմպերիալիստները», «կորչի 1930 թվականի անգլո-իրաքական պայմանագիրը» և այլն։ Բաղդադում այդ կապակցությամբ մտցվեց ռազմական դրություն։ Բայց, չնայած դաժան տեռորին, Իրաքի աշխատավորները շարունակում են պայքարը՝ հանուն ազատության և իրենց հայրենիքի ազգային անկախության։

1951 թվականին Եգիպտոսում բարձրացավ հակաիմպերիալիստական ցույցերի հուժկու ալիքը։ Ժողովրդական մասսաների ճնշման տակ Եգիպտոսի պառլամենտը 1951 թվականի հոկտեմբերի 15-ին չեղյալ հայտարարեց 1936 թվականի անգլո-եգիպտական ստրկացուցիչ պայմանագիրը և 1899 թվականի կոնդոմինիումի, այսինքն Սուդանում անգլո-եգիպտական «համատեղ» կառավարման մասին կոնվենցիան (փաստորեն իշխա-



նությունը Սուդանում գտնվում է անգլիական գեներալ-նահանգապետի ձեռքում)։

Անգլիական կառավարությունը վճռեց ինչ գնով էլ լինի պահպանել Եգիպտոսում իր անօրեն իշխանությունը։ ԱՄՆ-ի, Ֆրանսիայի և Թյուրքիայի իմպերիալիստների հետ միասին նա Եգիպտոսի կառավարությանը, որպես 1936 թվականի ստրկացուցիչ պայմանագրի վերացման պայման առաջարկեց Եգիպտոսի միացումը ԱՄՆ-ի կողմից ոգեշնչված «Միջին Արևելքի պաշտպանության» ագրեսիվ պլանին։

Եգիպտոսի ժողովուրդը ատելությամբ հետ մղեց իմպերիալիստների պայմանները և նրանցից պահանջեց անվերապահորեն հեռանալ Եգիպտոսի տերիտորիայից։ Ամերիկյան իմպերիալիստների առաջարկությունը՝ «միջնորդության» մասին, նույնպես մերժվեց։ ԱՄՆ-ի կառավարությունը փորձում էր օգտագործել այդ կոնֆլիկտը՝ Եգիպտոս թափանցելն ուժեղացնելու համար։

Անգլիական գաղութարարների զավթողական քաղաքականությունը առաջ բերեց եգիպտական ժողովրդի և, ամենից առաջ, բանվոր դասակարգի վճռական դիմադրությունը։ Բանվոր դասակարգը պահանջեց

կառավարությունից՝ վճռական միջոցառումներ ընդունել ագրեսորների դեմ։ Ազգային-ազատագրական ճակատի ճնշման տակ Եգիպտոսի կառավարությունը 1952 թվականի հունվարի 25-ին որոշում ընդունեց խզել Անգլիայի հետ դիվանագիտական հարաբերությունները։

1953 թվականի մարտի 14-ին ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունները Եգիպտոսին արեցին համատեղ առաջարկություններ՝ կոնֆլիկտը լուծելու մասին։ Այդ առաջարկությունները շատ քիչ են տարբերվում նախկինում արած նրանց առաջարկություններից։ «Մեկ տարվա ընթացքում անվերապահ էվակուացիայի» փոխարեն ԱՄՆ-ը և Անգլիան Եգիպտոսից պահանջում են Սուեզի ջրանցքի շրջանում լիովին սարքավորված ռազմական բազայի ստեղծման իրավունք, որը պետք է գտնվի ԱՄՆ-ի և Անգլիայի հսկողության տակ։ Բացի դրանից, Եգիպտոսը պետք է համաձայնվի մասնակցելու այսպես կոչված Մերձավոր և Միջին Արևելքի «պաշտպանության» պլաններին։

Նույն թվի ապրիլի 28-ին սկսվեցին անգլո-եգիպտական բանակցությունները, որոնք



չհասցրին համաձայնության և ընդհատվեցին մայիսի 6-ին։ Հաշվի առնելով հասարակական կարծիքը, Եգիպտոսի կառավարությունը նորից պահանջեց Սուեզի ջրանցքի շրջանից անգլիական զորքերի անվերապահ էվակուացիան։ Դրա հետ միասին Եգիպտոսի կառավարությունը հրաժարվեց միջին արևելյան պաշտպանության հարցի մասին որևէ բանակցություններ վարելուց և մերժեց ԱՄՆ-ի միջամտությունը։ 1953 թվականի մայիսի 7-ից մինչև 10-ը արաբական 8 պետությունների արտաքին գործերի մինիստրների տեղի ունեցած խորհրդակցությունը ամբողջությամբ պաշտպանեց Եգիպտոսի պահանջները։

Եգիպտոսի ժողովրդի պայքարը ղեկավարում է ընդհատակ անցած կոմունիստական պարտիան։ Հակաիմպերիալիստական շարժման մեջ ակտիվորեն մասնակցում են Եգիպտոսի բանվորների և ուսանողների Ազգային կոմիտեն, Ազգային ազատագրական բանվորական կոմիտեն, Եգիպտոսի կանանց միությունը, Նեղոսի հարթավայրի միացման ճակատը և ուրիշ կազմակերպություններ։

Գաղութային աշխարհի, այդ թվում և

Մերձավոր ու Միջին Արևելքի ժողովուրդները օտարերկրյա իմպերիալիզմի դեմ մղած իրենց արդարացի ազատագրական պայքարում հենվում են Սովետական Միության կողմից ղեկավարվող խաղաղության և դեմոկրատիայի ճամբարի համակրանքի և մշտական աջակցության վրա։ Ինչպես նշվում է Եգիպտոսի, Սիրիայի, Լիբանանի, Իրաքի, Սաուդական Արաբիայի, Եմենի և Իսրայելի կառավարություններին ուղղված Սովետական Կառավարության 1951 թվականի նոյեմբերի 21-ի նոտայի մեջ, «Սովետական Կառավարությունը Սովետական պետության գոյության առաջին օրերից հասկանալով ու համակրանքով է վերաբերվել Արևելքի ժողովուրդների ազգային ձգտումներին և ազգային անկախության ու սուվերենության համար նրանց պայքարին»։

Մերձավոր և Միջին Արևելքի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը ծավալվում է խաղաղության կողմնակիցների շարժման աճի պայմաններում։ Նա ավելի ու ավելի է միաձուլվում նոր համաշխարհային պատերազմի վտանգի դեմ պայքարի



հետ։ Ժողովուրդները ուժեղացնում են պայքարը Մերձավոր և Միջին Արևելքը ագրեսիվ բլոկների վերածելու դեմ։ Նրանք չեն ցանկանում ներքաշվել Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ պատրաստվող պատերազմի մեջ։ «Երբեք չպատերազմել Սովետական Միության դեմ» կոչը արտահայտում է բոլոր աշխատավոր մասսաների տրամադրությունը։

Մերձավոր և Միջին Արևելքի երկրների աշխատավորները այլևս չեն ցանկանում մնալ իմպերիալիզմի իրավազուրկ ստրուկներ։ Նրանք ուժեղացնում են պայքարը հանուն ազգային անկախության, հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի։ Այդ պայքարը լիակատար համերաշխություն և ջերմ պաշտպանություն է գտնում ամբողջ պրոգրեսիվ մարդկության կողմից։

Ս. ՊԱՊՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ ԵՎ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆ ՏՎՈՂ ՈՒԺՆ Է

*1. Մեր Հայրենիքի հզորության անշեղ աճը Կոմունիստական պարտիայի վարած ճշմարտացի քաղաքականության և նրա կազմակերպչական աշխատանքների արդյունքն է։*

*2. Սովետական Միության Կոմունիստական պարտիան հանդիսանում է ՍՍՌՄ աշխատավորների առաջավոր ջոկատը։*

*3. Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի քաղաքական ղեկավարն է։*

*4. Մեր պարտիայի քաղաքականության ուժը հիմնըված է մասսաների ստեղծագործական ակտիվության վրա և ցույց է տալիս սոցիալիստական հասարակության զարգացման միակ ճիշտ ճանապարհը։*

*5. Կոմունիստական պարտիայի և ժողովրդի անխախտելի միասնությունը Սովետական պետության*



*անպարտելիության աղբյուրն է և մեր սոցիալիստական Հայրենիքի հետագա զարգացման ու ծաղկման գրավականը։*

*6. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XIX համագումարի որոշումները հանդիսանում են սովետական ժողովրդի պայքարի և աշխատանքների մեծ ծրագիր։*

*7. Մեր ժողովրդի անձնազոհ աշխատանքը նոր հնգամյակի վիթխարի խնդիրները կատարելու համար՝ վկայում է Կոմունիստական պարտիայի գործին սովետական մարդկանց նվիրվածությունը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Ի. ՍՏԱԼԻՆ — Ճառ պարտիայի 19-րդ համագումարում, *Հայպետհրատ, 1952 թ.*։

2. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, բաժին 3-րդ։ *Հայպետհրատ, 1952 թ.*։

3. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրություն, *Հայպետհրատ, 1952 թ.*։

4. Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին ուղղություն տվող և ղեկավար ուժն է։ *(«Ս. Հ.», 1953 թվականի հունիսի 12-ի համարը)*։

## II

## ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

*1. Բերքահավաքին հաջող նախապատրաստվելը բոլոր կոլտնտեսականների, ՄՏ կայանների մեխանիզատորների, սովխոզների աշխատողների պարտականությունն է։*

*2. Գյուղատնտեսական բոլոր մեքենաների և գործիքների ժամանակին վերանորոգումը բերքահավաքի խնդիրների կատարման հիմնական պայմաններից մեկն է։*

*3. Աշխատանքային կարգապահության ամրապնդումը, բերքահավաքի աշխատանքի ճիշտ կազմակերպումը, գյուղատնտեսության առաջավորների փորձի և առաջավոր ագրոտեխնիկական գիտության հիմունքների տարածումը, մեքենաները լրիվ կարողությամբ և բարձր արտադրողականությամբ օգտագործելը՝ բերքահավաքի հաջողության կարևոր պայմանն է։*

*4. Կոլտնտեսությունների և ՄՏ կայանների միջև եղած պայմանագրային պարտավորությունների անթերի կատարումը 1953 թվականը բարձր բերքի տարի դարձնելու կարևորագույն պայմանն է։*

*5. Բերքահավաքը անկորուստ և սեղմ ժամկետում ավարտելը, պետական պարտավորությունները ժամկետից շուտ կատարելը՝ գյուղատնտեսության բնագավառի աշխատողների պատվի գործն է։*



*6. Բերքահավաքի նախապատրաստումը և կազմակերպված անցկացումը մեր կոլտնտեսություններում և բրիգադայում։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.։*

2. Ավելի մեծ ուշադրություն գյուղատնտեսության պրոպագանդային— «Պրավդա»-ի *հունիսի 19-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.» 1953 թվականի հունիսի 20-ի համարում։*

3. Բազմակողմանիորեն նախապատրաստվել բերքահավաքին— *«Ս. Հ.» 1953 թվականի հունիսի 14-ի առաջնորդողը։*

## III

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ԼՐԻՎ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊԱՅՄԱՆ Է 1953 ԹՎԱԿԱՆԻ ՊԼԱՆՆԵՐԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Արդյունաբերության աշխատողների առաջնահերթ խնդիրն է՝ հայտնաբերել և օգտագործել արտադրության ներքին ռեզերվները և այն դարձնել 1953 թվականի պլանները ժամկետից շուտ կատարելու աղբյուր։*





2. Արդյունավետ օգտագործել առաջավոր տեխնիկան, հոսքը, վառելիքը, նյութերը և էլեկտրաէներգիան, որն անհրաժեշտ պայման է արտապլանային կուտակումներ ստանալու և լրացուցիչ արտադրանք թողարկելու համար։

3. Արտադրության աշխատանքի մեթոդների և տեխնոլոգիայի սիստեմատիկ կատարելագործումը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղին է։

4. Լայնորեն ծավալենք սոցիալիստական մրցումը՝ արտադրության ռեզերվները հայտնաբերելու, լրիվ օգտագործելու և 1953 թվականի պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ — Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։

2. Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թ. թ. հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։ *Հայպետհրատ 1952 թ.։*

3. Հետևողականորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, *«Ս. Հ.» հունիսի 3-ի առաջնորդողը։*

---

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 02470 Պատվեր № 593 Տիրաժ 9500*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան,*
*Կնունյանցի № 8, 1953 թ.։*